Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 6—7

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ» ԹԵՐԹԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
1944

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 6—7

«Սովետական Հայաստան» թերթի
հրատարակչություն
1944



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ԺՈՂԿՈՄՍՈՎԵՏՈՒՄ

# 1944 ԹՎԻ ԲԱՐՁՐ ԲԵՐՔԻ ԵՎ ԿՈԼԽՈԶԱՅԻՆ ԱՆԱՍՆԱԲՈՒԾՈՒԹՅԱՆ ՎԵՐԵԼՔԻ ՀԱՄԱՐ ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ԿՈԼԽՈԶՆԵՐԻ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐԸ

*Հայկական ՍՍՌ Ժողկոմսովետը հաստատեց 1944 թվի բարձր բերքի և կոլխոզային անասնաբուծության վերելքի համար Հայկական ՍՍՌ կոլխոզների սոցիալիստական մրցության պայմանները։*

*Հայկական ՍՍՌ Ժողկոմսովետը որոշել է 1944 թվի համար սահմանել 9 փոխանցիկ Կարմիր Դրոշ գյուղատնտեսական կուլտուրաների բարձր բերքի և կոլխոզային անասնաբուծության վերելքի սոցիալիստական մրցության մեջ հաղթող կոլխոզների համար (հացահատիկային կուլտուրաների գծով՝ 2 դրոշ, բամբակի գծով՝ 1, ծխախոտի գծով՝ 1, խաղողագործության գծով՝ 1, շաքարի ճակնդեղի գծով՝ 1, կարտոֆիլի գծով՝ 1*

և անասնաբուծության գծով՝ 2 դրոշ) և հաստատել է սոցիալիստական մրցության պայմանները:

Հանձնարարել Հայկական ՍՍՌ Հողժողկոմատին՝ տարեկան 3 անգամ հանրագումարի բերել սոցիալիստական մրցության արդյունքները և տվյալները ներկայացնել Հայկական ՍՍՌ Ժողկոմսովետին՝ սոցիալիստական մրցության մեջ հաղթողներին որոշելու և նրանց Հայկական ՍՍՌ Ժողկոմսովետի փոխանցիկ Կարմիր Դրոշներ հանձնելու համար, ըստ հետևյալ ժամանակաշրջանների.

## ԲԱՐՁՐ ԲԵՐՔԻ ՄՐՑՈՒԹՅԱՆ ԱՍՊԱՐԵԶՈՒՄ

Առաջին անգամ 1944 թվի հուլիսի 1-ին.

1. Հացահատիկային և հացահատիկային-լոբազգի կուլտուրաների, բամբակի, ծխախոտի, շաքարի ճակնդեղի, կարտոֆիլի գարնանացանի, խաղողի և պտղատու նոր այգիներ գցելու, ինչպես նաև անկարաններ պատրաստելու պլանը կատարելու ու գերակատարելու համար, ագրոկանոններով սահմանված ժամկետներին աշխատանքները կատարելու բարձր որակով:



Երկրորդ անգամ՝ 1944 թվի նոյեմբերի 10-ին.

2. Բամբակի դաշտերը ժամանակին նոսրացնելու և ցանքի սահմանված խտությունը՝ հեկտարին 100 հազարից մինչև 120 հազար բույս պահպանելու համար, բամբակի վեգետացիոն շրջանում սնունդ տալու, ոչ պակաս քան 5 խոր կուլտիվացիա և 6 ձեռքի մշակում ապահովելու, ակոսային մեթոդի միջոցով բոլոր պլանտացիաները ջրելը ապահովելու և վնասատուների դեմ ժամանակին պայքար կազմակերպելու համար:

Ծխախոտի պլանտացիաները ամենալավ ձևով մշակելու, ոչ պակաս քան 4 անգամ միջշարային մշակում կատարելու, պլանտացիաները փխրուն և մոլախոտերից մաքուր վիճակում պահպանելու հաշվով:

3. Ժամանակին շաքարի ճակնդեղի չարոլկա կատարելու, ցանքը նոսրացնելու համար, յուրաքանչյուր հեկտարի վրա պահպանելով ոչ պակաս քան 120 հազարից մինչև 140 հազար բույս, հետագայում ոչ պակաս 4—5 անգամ կուլտիվացիա կատարելով: Ջրելը ժամանակին կատարելու և վեգետացիոն շրջանում հանքային ու տեղական պարարտանյութերով 2 անգամ սնուցելու համար:

4. Երկու անգամ կարտոֆիլի բուկլից և ոչ պակաս քան 4 անգամ միջշարային մշակում ու քաղհան կատարելու համար անջրդի հողերում, և ոչ պակաս քան 5 անգամ՝ ջրովի ու խոնավ հողամասերում, ամբողջ վեգետացիոն շրջանի ընթացքում հողը փխրուն, մոլախոտերից մաքուր վիճակում պահպանելու հաշվով, կարտոֆիլի հիվանդությունների ու վնասատուների դեմ ժամանակին պայքար մղելու համար:

5. Բոլոր բերքատու և ոչ բերքատու խաղողի այգիները համատարած փորելու համար, պահպանելով սահմանված խորությունը և կատարվող աշխատանքների որակը: Ժամանակին ջրելու, թմբերը և միջշարային տարածությունները 2—4 անգամ մշակելու համար: Կուսկուտայի դեմ սիստեմատիկ պայքար մղելու և միլդյուի ու օիդիումի դեմ ոչ պակաս քան 4 անգամ, ողկուզակերի դեմ ոչ պակաս քան 3 անգամ ժամանակին խաղողի այգիների բուժում կազմակերպելու համար:

6. Հացահատիկային կուլտուրաների առանձին մասսիվների հասունացմանը զուգընթաց բերքահավաքի ու կալսման պլանը սահմանված ժամկետին և անկորուստ կատարելու համար, խզում թույլ չտալով բեր-



քահավաքի, բերքի փոխադրման ու կալսման միջև. ծխախոտի տերևաքաղը որակով ու ժամանակին կատարելու և ծխախոտը մթերակայաններին հանձնելու համար. շրջհողբաժնի սահմանած օրացուցային պլանով շաքարի ճակնդեղի բերքահավաքը բարձր որակով կատարելու և այն ըստ գործարանային կոնդիցիայի հանձնելու համար. արդյունաբերական խաղողը ըստ խաղողի տեսակների սահմանված կարգով հավաքելու համար, թույլ չտալով, որ խաղողի առողջ ողկույզները խառնվեն հիվանդներին:

7. Վաղ ցելերի վարի պլանը ժամանակին կատարելու համար, հետագայում դրանք մշակելով ոչ պակաս քան 2 անգամ:

8. Աշնանացանի պլանը բարձր որակով և ագրոկանոններով սահմանված ժամկետներին կատարելու համար:

9. Ցրտահերկի պլանը կատարելու համար, տեղական և հանքային պարարտանյութ փոխադրելով դաշտերը:

10. Հացահատիկային կուլտուրաները սերմանյութով լրիվին ապահովելու համար, 1944 թվի աշնան և 1945 թվի գարնան ցանք կատարելու նպատակով փորձարկված, մաքուր տեսակավոր բարձր

բերքատու սերմեր առանձնացնելու միջոցով (ոչ պակաս քան 97 տոկոս)։

Երրորդ անգամ.

11. Տարեկան արդյունքներով, գյուղատնտեսական բոլոր աշխատանքների պլանը կատարելու, բերքատվությունը բարձրացնելու, պետության հանդեպ սահմանված բոլոր պարտավորությունները ժամանակին կատարելու և ՄՏ կայանի կատարած աշխատանքի բնավարձը հացահատիկային կուլտուրաներով, բամբակով, կարտոֆիլով ու շաքարի ճակնդեղով ժամանակին վճարելու համար։

## ԿՈԼԽՈԶԱՅԻՆ ԱՆԱՍՆԱԲՈՒԾՈՒԹՅԱՆ ՎԵՐԵԼՔԻ ՄՐՑՈՒԹՅԱՆ ԱՍՊԱՐԵԶՈՒՄ

Առաջին անգամ՝ 1944 թվի հուլիսի 1-ին.

1. Անասունների անկորուստ ձմեռման լավ արդյունքների, անասունների լավ գիրության, անասունների խնամքի ու պահպանման ասպարեզում անասնաբուծական-անասնաբուժական կանոնները պահպանելու համար։

2. Անասունների ծինը հաջող կազմակերպելու և մատղաշը պահպանելու համար։

3. Յայլաղային կամպանիային լավ նախապատրաստվելու ու արոտավայրերը ճիշտ օգտագործելու համար։



4. Կերաբույսերի ցանքի պլանը կատարելու և կերային կուլտուրաների սերմնադաշտերի առանձնացման պլանը ապահովելու համար։

Երկրորդ անգամ՝ 1944 թվի սեպտեմբերի 1-ին.

5. Կաթնատվության, բրդի խուզման, ձվատվության, համախառն ու ապրանքային մսատվության ասպարեզում անասունների մթերատվության պլանը կատարելու համար։

6. Արտադրողներին օրինակելիորեն պահպանելու, զուգավորումը լավ կազմակերպելու և բոլոր մայր անասուններին զուգավորման լիովին ընդգրկելու համար։

7. Կերաբույսերի բերքատվության պլանը կատարելու ու խոտհունձը և սիլոսացումը հաջողությամբ կատարելու համար։

Երրորդ անգամ՝ տարեկան արդյունքներով.

8. Կոլխոզային անասնաբուծության զարգացման պետական պլանը անասունների բոլոր տեսակների գծով կատարելու համար։

9. Ընթացիկ տարում ծնված բոլոր մտրուկները պահպանելու, յուրաքանչյուր 100

կովին ոչ պակաս քան 85 հորթ աճեցնելու, յուրաքանչյուր 100 մայր ոչխարին ոչ պակաս քան 90 գառ և յուրաքանչյուր մայր խոզին 8 խոճկոր աճեցնելու ու պահպանելու համար:

10. Անասնապահական շենքերի շինարարության պլանը կատարելու և անասուններին տաք գոմերով ու ախոռներով ապահովելու համար:

11. Պետության բարձր որակի անասնապահական մթերքներ՝ միս, կաթ, բուրդ, պանիր, բրինձա, ձու, հում կաշի, ինչպես նաև խոզի ճարպ հանձնելու պլանը ժամանակին կատարելու համար:

12. Անասունների ձմեռմանը օրինակելիորեն նախապատրաստվելու համար:

Սոցիալիստական մրցության մեջ հաղթող կոլխոզների համար վերոհիշյալ ցուցանիշների հետ միաժամանակ կարևորագույն պայման համարել նաև աշխատանքի լավագույն կազմակերպումը կոլխոզներում, այսինքն.

1. Կոլխոզների արտադրական-ֆինանսական պլանները ժամանակին ու որակով կազմելը «Հայկական ՍՍՌ-ում գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը և անասունների մթերատվությունը



բարձրացնելու համար կոլխոզնիկների աշխատանքի լրացուցիչ վարձատրության մասին» ՍՍՌ Միության Ժողովրդական Կոմիսարների Սովետի և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի 1941 թվի մարտի 13-ի № 533 որոշման տեսանկյունով:

2. Բրիգադաների, օղակների և ֆերմաների ճիշտ կոմպլեկտավորումը, հողամասերը և սերմադաշտերը, քաշող ուժը, գյուղատնտեսական ինվենտարը և անասունները նրանց ամրացնելը:

3. Գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության և անասնաբուծության պլանային առաջադրանքները ժամանակին ու ճիշտ բոլոր բրիգադաներին, օղակներին և յուրաքանչյուր կոլխոզնիկին հասցնելը:

4. Կոլխոզի աշխատանքներում բոլոր աշխատունակների մասնակցությունը լրիվին ապահովելը, մանկամսուրները, մանկապարտեզները ու մանկական հրապարակները օրինակելիորեն կազմակերպելը:

5. Աշխօրերի սահմանված մինիմումը, ինչպես ըստ ժամանակաշրջանների, այնպես և տարվա ընթացքում բոլոր կոլխոզնիկների կողմից կատարելը:

6. Աշխատանքի ճիշտ կազմակերպումը, բրիգադաներում, օղակներում, ֆերմանե-

# ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՈՒԺԻ ԵՎ ՀԶՈՐՈՒԹՅԱՆ ԱՂԲՅՈՒՐՆԵՐԸ

Ընկեր Ստալինն իր 1944 թվի մայիսմեկյան պատմական հրամանում մեծագույն իմաստությամբ հանրագումարի բերեց Կարմիր Բանակի մեկ տարուց ավելի կատարվող հարձակողական հաղթական մարտերի փայլուն արդյունքները:

Կարմիր Բանակի վիթխարի հաղթանակների մասին մայիսմեկյան հրամանում տրված են կոնկրետ և հասկանալի, ստալինյան խորիմաստությամբ: Կարմիր Բանակի մեկ տարուց ավելի կատարվող հարձակողական մարտերը ստացան խոշորագույն ռազմաստրատեգիական և քաղաքական նշանակություն: Այդ հարձակողական մարտերի հետևանքով լրիվին ձախողվեց թշնամու պաշտպանողական ստրատեգիան, որով նա ձգտում էր ձգձգել պատերազմը և նրա մեջ գտնել ելք իր անխուսափելի կործանումից դուրս գալու համար:

Կարմիր Բանակը Ստալինգրադի տակ տարած պատմական հաղթանակներից



հետո, անընդհատ իր ձեռքը պահելով ռազմական գործողությունների նախաձեռնությունը, թշնամուց մաքրել է Սովետական Միության օկուպացված հողի ավելի քան ¾-ը: Կարմիր Բանակի փառապանծ գնդերն այդ ժամանակամիջոցում հաղթական մարտերով անցան Վոլգայից մինչև Սերետը, կովկասյան ալեհեր լեռներից մինչև Կարպատները և հասել են 400 կիլոմետր տարածությամբ՝ Ռումինիայի և Չեխոսլովակիայի հետ եղած մեր պետական սահմաններին: Կարմիր Բանակի զորքերն այժմ ֆաշիստական վիրավոր գազանին անխնայորեն ջախջախում են ռումինական հողում: Կարմիր Բանակը 1943 թ. ամառվա և 1943—1944 թ. թ. ձմեռային կամպանիայի շրջանում թշնամուց մաքրել է ավելի քան 800·000 քառակուսի կիլոմետր տարածություն, ազատագրելով սովետական 370 քաղաք և ավելի քան 65·000 բնակելի տեղեր:

Կարմիր Բանակի հարձակողական մարտերի ընթացքում գերմանա-ֆաշիստական բանակները կրում են տեխնիկայի և մարդկանց վիթխարի կորուստներ: 1944 թ. մարտի և ապրիլի առաջին օրերի ռազմա-

կան գործողությունների ընթացքում, միայն Հարավային ռազմաճակատում (ներառյալ նաև Ղրիմը) թշնամին տվել է ավելի քան 600.000 սպանված և գերի զինվոր ու սպա, մեծ քանակությամբ տանկեր, ինքնագնաց հրանոթներ, ինքնաթիռներ, ականանետեր և այլ տեխնիկա:

Միայն ուկրաինական առաջին ռազմաճակատի զորքերը մարտի 4-ից մինչև 31-ը ժամանակաշրջանում գերմանական զավթիչներից մաքրել են 41.940 քառակուսի կիլոմետր սովետական հող, ազատագրել են Ուկրաինայի երեք մարզային կենտրոն, 57 քաղաք, 11 երկաթուղային հանգույց, 647 խոշոր և 3.801 այլ բնակելի կետեր: Այդ ժամանակամիջոցում ուկրաինական առաջին ռազմաճակատի զորքերը ջախջախել են գերմանացիների 27 դիվիզիա, 5 դիվիզիոն խումբ: Գերմանացիների և նրանց վասալների կորուստներն այդ գործողություններում կազմում են 208.260 զինվոր ու սպա, 2187 տանկ և ինքնագնաց հրանոթ, 4602 հրանոթ, 2676 ականանետ, 8429 գնդացիր, 53,987 ավտոմեքենա:

Ուկրաինական երկրորդ ռազմաճակատի զորքերը մարտի 6-ից մինչև ապրիլի 15-ը ոչնչացրել են և վերցրել գերի թշնամու



145.793 զինվոր և սպա, ինքնաթիռ—109, տանկ և ինքնագնաց հրանոթ—1419, տարբեր տրամաչափի հրանոթ—2.330, ականանետ—2994, գնդացիր— 5.750, ավտոմեքենա— 40.207:

Կարմիր Բանակի 1943—1944 թ. թ. ձմեռային կամպանիայի հաղթանակների մասին ընկեր Ստալինն իր մայիսմեկյան հրամանում ասում է.

«1943—1944 թ. թ. ձմեռային կամպանիայի ընթացքում Կարմիր Բանակը շահեց Դնեպրի ու Աջափնյա Ուկրաինայի համար մղված պատմական ճակատամարտը, խորտակեց գերմանացիների պաշտպանողական հզոր ամրությունները Լենինգրադի մոտ և Ղրիմում, հմուտ, սրընթաց գործողություններով հաղթահարեց գերմանական պաշտպանությունը Հարավային Բուգի, Դնեստրի, Պրուտի, Սերետի ջրային բնագծերի վրա: Համարյա ամբողջ Ուկրաինան, Մոլդավիան, Ղրիմը, Լենինգրադի ու Կալինինի մարզերը, Բելոռուսիայի զգալի մասը մաքրված են գերմանական զավթիչներից: Հայրենիքին են վերադարձվել Հարավի մետալուրգիան, Կրիվոյ Ռո-

դի, Կերչի և Նիկոպոլի հանքերը, Դնեպրի և Պրուտի միջև ընկած արգավանդ հողերը: Ֆաշիստական ստրկությունից ազատագրվել են տասնյակ միլիոնավոր սովետական մարդիկ»:

Կարմիր Բանակի 1943—1944 թ. թ. ձմեռային հաղթական կամպանիան ունեցավ նաև մեծագույն քաղաքական նշանակություն. այն ավելի քան բարձրացրեց սովետական պետության ռազմաքաղաքական միջազգային դերը: Ավելի քան ամրապնդվեց հակաֆաշիստական կոալիցիան, ամրապընդվեցին դեմոկրատական ժողովուրդների հավատը և վստահությունը դեպի մեր հաղթանակը: Կարմիր Բանակի հաղթանակները խուճապ և իրարանցում առաջ բերեցին ֆաշիստական լագերում: Օր ավուր աճում է անվստահությունը հիտլերյան վասալների մեջ դեպի Գերմանիայի հաղթանակը: Կարմիր Բանակի խորտակիչ հարվածների տակ ֆաշիստական բլոկը փլվում է:

«Կարմիր Բանակի հարվածների տակ,— ասում է ընկեր Ստալինը,— ճարճատում ու քայքայվում է ֆաշիստական պետությունների բլոկը: Վախն ու իրարանցումը այժմ տիրում են հիտլերի ռումինական, հունգարական,



ֆիննական և բուլղարական «դաշնակիցների» մեջ: Այժմ հիտլերյան այդ կամակատարները, որոնց երկրները օկուպացված են և օկուպացվում են գերմանացիների կողմից, չեն կարող չտեսնել, որ Գերմանիան տանուլ է տվել պատերազմը»:

Ինչո՞ւմն են Կարմիր Բանակի ուժի և մեծագույն հաղթանակների պայմանները: Կարմիր Բանակի ուժը և նրա հաղթանակների պայմաններն ամենից առաջ այն է, որ նա մղում է ոչ թե զավթողական, ոչ թե իմպերիալիստական պատերազմ, այլ հայրենական-ազատագրական, արդարացի պատերազմ: Դեռևս իր ժամանակին Էնգելսը խոսելով 1792—1799 թվերին ֆրանսիացիների հաղթանակների մասին, այն բացատրում է նրանց կողմից մղվող պատերազմի արդարացի բնույթով և հանում է իր հայտնի եզրակացությունը, որ արդարացի պատերազմ մղող բանակն ամենաուժեղ բանակն է, որովհետև նա կռվում է իր իսկական հայրենիքի և արդար գործի պաշտպանության համար:

«Հիշեցեք, թե ինչպիսի հրաշքներ կատարեց ռևոլյուցիոն բանակների խանդավառությունը 1792 թվից մինչև

1799 թվերը,— ասում է Էնգելսը.— բանակներ, որոնք պայքարում էին միմիայն պատրանքի, միմիայն կարծեցյալ հայրենիքի համար և, դուք պետք է հասկանաք, թե որքան ուժեղ պետք է լինի այն բանակը, որը պայքարում է ոչ թե պատրանքի, այլ ռեալ իրականության համար...»:

Այնուհետև նա խոսելով կոմունիստական հասարակության պաշտպանության մասին՝ ասել է.

«Այդպիսի հասարակության անդամը պատերազմի դեպքում... պետք է պաշտպանի իսկական հայրենիքը, իսկական օջախը... Հետևաբար, նա պետք է պայքարի ոգևորությամբ, տոկունությամբ, որոնց հանդեպ ծղոտի նման ցրվուցան պետք է լինի ժամանակակից բանակի մեխանիկական ուսուցումը»:

(Մարքս—Էնգելս. Երկեր հ. 3-րդ, էջ՝ 273):

Մարքսիզմի հիմնադիրների այդ մարգարեությունն այժմ Կարմիր Բանակի օրինակով տեսնում և զգում են ամենքը:

Կարմիր Բանակի զինվորն արհամարհում է մահը, միանգամայն գիտակցությամբ



հաճախ գնում է դեպի մահ, հանուն իր արդար պայքարի հաղթանակի: Այդպես վարվեցին 28 պանֆիլովցիները, Զոյա Կոսմոդեմյանսկայան, կոմերիտականներ Մատրոսովը, Հ. Ավետիսյանը, Ստանովսկին, այդպես են վարվում այժմ Կարմիր Բանակի շատ զինվորներ, եթե այդ պահանջում է ստեղծված ռազմական իրադրությունը և Հայրենիքի շահերը:

«Կարմիր Բանակն ունի,— ասում է ընկեր Ստալինը.— պատերազմի իր ազնիվ ու վեհ նպատակը, որը սխրագործությունների է ոգեշնչում նրան: Դրանով էլ հենց բացատրվում է այն, որ հայրենական պատերազմը մեզ մոտ ծնում է հազարավոր հերոսներ և հերոսուհիներ, որոնք պատրաստ են մահվան գնալ՝ հանուն իրենց Հայրենիքի ազատության:

Այս է Կարմիր Բանակի ուժը»:

(Ստալին. «Սովետական Միության հայրենական մեծ պատերազմի մասին», էջ՝ 54):

Կարմիր Բանակի մեծագույն հաջողությունների և հաղթանակների պատճառը հանդիսանում է մեր բանակի և ժողովրդի,

ռազմաճակատի և թիկունքի միասնությունը:

Աշխարհում ոչ մի բանակ չի հաղթել առանց ամուր թիկունքի, քանի որ թիկունքն է, որ ռազմաճակատին տալիս է զենք, զինամթերք, ռեզերվներ, սնունդ և այն ամենը, ինչ անհրաժեշտ է կռվող բանակի հաղթանակների համար:

Պատմությունը չգիտի ոչ մի բանակի և ժողովրդի այնպիսի կուռ միասնություն, ինչպիսին կա սովետական ժողովրդի և Կարմիր Բանակի միջև: Անսահման մեծ է սովետական թիկունքի օգնությունը Կարմիր Բանակին:

Կարմիր Բանակին անգնահատելի օգնություն է ցույց տալիս կոլխոզային գյուղը. կոլխոզային կարգերն իրենց ցույց տվին որպես ռազմաճակատի ամուր հենարան: Պատերազմը ցույց տվեց, որ առանց կոլխոզային կարգերի, անհնար կլիներ Կարմիր Բանակին և երկրին տալ այն ամենը, ինչ անհրաժեշտ է և, նա տալիս է:

Չափազանց մեծ է սոցիալիստական արդյունաբերության օգնությունը Կարմիր Բանակին: Արդյունաբերությունն է, որ այժմ լիովին ապահովում է Կարմիր Բա-



նակին ամենաառաջավոր զենքի տեսակներով: Կարմիր Բանակի մարտիկներն ամեն քայլափոխում զգում են արդյունաբերության մեծագույն օգնությունը: Ահա թե ինչ է գրում մի թեժ մարտի փոքրիկ ընդմիջման ժամանակ վաշտի ավագ կոմերիտական Նազարովը ուրալցիներին.—

«Ընդունեցեք, ընկեր ուրալցիներ, մեր ճակատային շնորհակալությունը թշնամուն ջախջախելու գործում ձեր մեծ աշխատանքի համար: Ձեզանով հպարտանում ենք ռազմաճակատում. մարտիկները խորին շնորհակալություն են հայտնում ձեզ ձեր հրաշալի արտադրանքի համար: Մենք ձեզ վրա հուսով ենք և գիտենք, որ դուք ռազմաճակատին կտաք այնքան զենք ու զինամթերք, որքան պետք կլինի նրան: Հավաստիացնում ենք ձեզ, որ ձեր հրաշալի մարտական տեխնիկան վստահելի ձեռքերումն են: Ֆրիցներին խփել ենք, խփում ենք և կխփենք ինչպես պետքն է»:

Ընկեր Ստալինը թիկունքի կատարած մեծագույն դերն ըստ արժանույն գնահատելով, 1943 թ. նոյեմբերի 6-ին իր զեկուցման մեջ ասաց.

«Թիկունքում մարդկանց կատարած անձնուրաց աշխատանքը Կարմիր Բանակի հերոսական պայքարի հետ միասին պատմության մեջ կմտնի որպես ժողովրդի անօրինակ սխրագործություն՝ հանուն հայրենիքի պաշտպանության»:

Սովետական թիկունքի մարդկանց մեկ անգամ ևս մեծագույն գնահատական տվեց ընկեր Ստալինը իր մայիսմեկյան հրամանում.—

«Սակայն Կարմիր Բանակի հաջողությունները,— ասում է ընկեր Ստալինը,— կարող էին անկայուն լինել և նրանք ի չիք կդարձվեյին հակառակորդի կողմից հասցված առաջին իսկ լուրջ հարվածներից հետո, եթե Կարմիր Բանակին թիկունքից նեցուկ չը լինեյին մեր ամբողջ սովետական ժողովուրդը, մեր ամբողջ երկիրը...

Հայրենական պատերազմը ցույց տվեց, որ սովետական ժողովուրդն ընդունակ է հրաշքներ գործելու և հաղթող դուրս գալու ամենածանր փորձություններից: Բանվորները, կոլխոզնիկները, սովետական ինտելիգենցիան, սովետական ամբողջ ժողովուրդը տա-



դրված է թշնամու ջախջախումն արագացնելու, ֆաշիստների ավերած տնտեսությունն ամբողջությամբ վերականգնելու, մեր երկիրն է՛լ ավելի ուժեղ և ունևոր դարձնելու վճռականությամբ»:

Կարմիր Բանակը չունենալով ռասսայական որևէ ատելություն դեպի այլ ժողովուրդները, նա բարձրացել, աճել և հզորանում է ժողովուրդների ստալինյան բարեկամությունից: Այսպիսով, ժողովուրդների բարեկամությունը Կարմիր Բանակի ուժի ու հզորության աղբյուրն է, նրա մեծագույն հաղթանակների պայմանը:

Պատերազմի առաջին իսկ օրից ՍՍՌՄ-ի բոլոր ժողովուրդները պաշտպան կանգնեցին սովետական մեծ հայրենիքին,—ռազմաճակատում ռուս, ուկրաինացի, հայ, ուզբեկ, բելոռուս, վրացի, ադրբեջանցի զինվորները կողք-կողքի կռվում են ընդհանուր թշնամու դեմ, և նրանցից յուրաքանչյուրն աշխատում է ինքն ավելի լավ կռվել, որպեսզի բարձր պահի ոչ միայն իր պատիվը, այլև բարձր պահի իր ամբողջ ժողովրդի պատիվն ու ազգային հպարտությունը:

Դղրդյունով տապալվեցին հիտլերյան

ֆաշիստների բոլոր հաշիվները՝ պառակտում և թշնամանք առաջ բերելու ՍՍՌՄ-ի ժողովուրդների միջև. ընդհակառակը, պատերազմի ժամանակ ավելի քան ամրապնդվեց մեր ժողովուրդների բարեկամությունը, որպես մեր հաղթանակների կարևոր պայման:

«Մեր երկրի ժողովուրդների բարեկամությունը,— ասում է ընկեր Ստալինը,— դիմացավ պատերազմի բոլոր դժվարություններին ու փորձություններին և է՛լ ավելի կոփվեց սովետական բոլոր մարդկանց կողմից ֆաշիստական զավթիչների դեմ մղվող ընդհանուր պայքարում: Դրա մեջ է Սովետական Միության ուժի աղբյուրը»:

(Ստալին. «Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Ռևոլյուցիայի 26-րդ տարեդարձը», էջ՝ 24—25):

ՍՍՌՄ-ի Գերագույն Սովետի 10-րդ սեսիայի պատմական որոշումները Միութենական Ռեսպուբլիկաների զորային կազմավորումներ ստեղծելու և այդ կապակցությամբ Պաշտպանության Ժողովրդական Կոմիսարիատն ընդհանուր-միութենականից միութենական-ռեսպուբլիկական ժողովրդական Կոմիսարիատի վերակազմելու



մասին հանդիսանում են խոշորագույն ձեռնարկումներ՝ է՛լ ավելի ամրապնդելու ժողովուրդների բարեկամությունը և Կարմիր Բանակի հզորությունը:

Կարմիր Բանակի հաջողությունների պայման է հանդիսանում նաև այն, որ թշնամու դեմ Կարմիր Բանակի հետ միասին կռվում է սովետական ամբողջ ժողովուրդը: Մեր պատերազմն ստացել է լիակատար ժողովրդական բնույթ: Թեկուզ բավական է նշել այն մեծագույն օգնությունը, որ ցույց են տալիս Կարմիր Բանակին ժողովրդական վրիժառուները՝ սովետական պարտիզանները:

Պատերազմի միայն առաջին երկու տարում պարտիզանները ոչնչացրել են 300.000 հիտլերական, խորտակել 3.000 գնացք, քանդել 3.263 կամուրջ, հրդեհել 895 մեծ պահեստ:

Պարտիզաններն իրենց վրա են դրավում թշնամու խոշոր ուժեր. ոչ լրիվ տվյալներով 1942 թ. պարտիզաններն իրենց վրա էին դրավում 144 ոստիկանական բատալիոն, 35 ոստիկանական գունդ, 10 «ՍՍ» պատժիչ դիվիզիա, 2 պահակային կորպուս, 15 դաշտային դիվիզիա, 72 զանազան այլ ստորաբաժանումներ:

Կարմիր Բանակի հաջողություններին զգալի չափով նպաստում են նաև մեր դաշնակիցները՝ Մեծ Բրիտանիան և ԱՄՆ-ը: Նրանց օժանդակությունը կայանում է, ոչ միայն նրանում, որ նրանք ճակատ են պահում Իտալիայում, այլև զգալի դեր են խաղում թշնամու դեմ մղվող պայքարում մեր դաշնակիցների ռազմա-ծովային և օդային ուժերը: Անգլիական ավիացիայի մինիստրության դեկտեմբերի 27-ի տվյալների համաձայն, 1943 թ. մայիսի 23-ից մինչև դեկտեմբերի 24-ը անգլիական ավիացիան Գերմանիայի վրա նետել է 100·000 տոննա ռումբ, որը հավասար է 1940, 1941, 1942 թ. թ. Գերմանիայի վրա նետված ռումբերի ընդհանուր քաշին: Անգլիայի ավիացիայի մինիստր Սինկլերի հայտարարության համաձայն 1944 թվի առաջին երեք ամսում անգլիական ավիացիան Գերմանիայի վրա գցել է ավելի քան 48·000 տոննա ռումբ: Պատերազմի ամբողջ ընթացքում Անգլիայի և ԱՄՆ-ի ռազմաօդային ուժերը ոչնչացրել են թշնամու 26·000 ինքնաթիռ:

Բավական զգալի է նաև մեր դաշնակիցների կողմից մեզ ցույց տրվող նյութական օգնությունը: Բավական է հիշել, որ ըստ



օտարերկրյա պետություններում տնտեսական գործունեության վարչության պետ Կրասուլի տվյալների՝ 1943 թվին ՍՍՌՄ ամերիկյան զենքի և այլ նյութերի ուղարկումները աճել են համարյա երկու անգամ ավելի, համեմատած անցյալ տարվա հետ:

Ընդամենը 1941 թվի հոկտեմբերից մինչև 1944 թ. հունվարը ՍՍՌՄ են ուղարկվել 8·400 հազար տոննա զանազան նյութեր, ընդհանուր արժեքով 4·243·804 հազար դոլլարի:

1943 թվ. մարտի 1-ից մինչև 1944 թվ. մարտի 1-ը ԱՄՆ ուղարկել է Սովետական Միությանը ավելի քան 8·800 ինքնաթիռ: Պատերազմի ընթացքում ուղարկել է ՍՍՌՄ 5·200 տանկ և հակատանկային հրանոթ և ավելի քան 190·000 բեռնատար մեքենա, 36·000 արագավազ ավտոմեքենա և 30·000 այլ ռազմական մեքենա:

Վերջերս Չերչիլը համայնքների պալատում իր արած հայտարարության մեջ ասաց, որ 1941 թվի հոկտեմբերի 1-ից մինչև 1944 թվի մարտի 31-ը Մեծ Բրիտանիան Սովետական Միությանն է ուղարկել 5031 տանկ, 6·778 ինքնաթիռ և այլ զինամթերք:



Մեր դաշնակիցների խաղացած դերի մա-

բանվոր դարձան սովետական հրամանատարության ճիշտ ստրատեգիայի ու տակտիկայի շնորհիվ, մեր մարտիկների ու հրամանատարների բարոյական բարձր ոգու և հարձակողական թափի շնորհիվ, մեր զորքերին սովետական առաջնակարգ տեխնիկայով լավ հագեցնելու շնորհիվ, մեր հրետանավորների, ականանետների, տանկիստների, օդաչուների, կապավորների, սակրավորների, հետևակայինների, հեծելազորայինների, հետախույզների աճած արվեստի և մարզվածության շնորհիվ»:

Կարմիր Բանակի ուժի և հզորության խոշորագույն աղբյուր է հանդիսանում սովետական կարգերի ուժն ու ամրությունը և բոլշևիկյան պարտիան: Լենին-Ստալինի պարտիան հանդիսանում է Կարմիր Բանակի մեծագույն հաղթանակների կազմակերպիչը և ոգեշնչողը:

Կարմիր Բանակի հիմնական կորիզի մի ըզգալի մասը պարտիականներ են: Բոլշևիկների պարտիայից է, որ դուրս են եկել Կարմիր Բանակի գեներալիտետի ամենալավագույն կադրերը, որոնք կենսագործելով ստալինյան հանճարեղ ստրատեգիան, Կարմիր



գնդերին առաջնորդում են դեպի հաղթանակ: Ռազմաճակատում կոմունիստները ցույց են տալիս չտեսնված հերոսության, հայրենասիրության և անձնազոհության օրինակներ:

Կարմիր Բանակի ուժը բոլշևիկների պարտիայի իմաստուն ղեկավարության մեջ է: Ընկեր Ստալինը 1943 թ. նոյեմբերի 6-ի իր զեկուցման մեջ ասում է.—

«Ինչպես խաղաղ շինարարության տարիներին, այնպես էլ պատերազմի օրերին սովետական ժողովրդի ղեկավար և ուղղություն տվող ուժը հանդիսացավ Լենինի պարտիան, բոլշևիկների պարտիան... Հայրենական պատերազմի օրերին պարտիան մեր առջև կանգնեց որպես ֆաշիստական զավթիչների դեմ մղվող համաժողովրդական պայքարի ոգեշնչողն ու կազմակերպողը»:

Կարմիր Բանակի ուժը և նրա հաջողությունների գլխավոր պայմանը նրա մեծ կազմակերպիչ, առաջնորդ, Գերագույն Գլխավոր Հրամանատար ընկեր Ստալինի հանճարեղ ղեկավարության մեջ է: Մեծ Ստալինի անվան հետ է կապված Կարմիր Բանակի կազմակերպումը, նրա հզորացումը

և փառապանծ հաղթանակները մեր հայրենիքի ոխերիմ թշնամիների դեմ: Կարմիր Բանակը կռվում է և հաղթում ստալինյան հանճարեղ ստրատեգիայով և ստալինյան մարտական ղեկավարությամբ:

Ընկեր Ստալինի անունը շուրթերին է, որ արհամարհելով մահը, հաղթական գրոհի են գնում կարմիր զորքերը, ընկեր Ստալինի անունը՝ դա Կարմիր Բանակի և սովետական ամբողջ ժողովրդի հաղթանակի սիմվոլն է:

Ընկեր Ստալինն իր մայիսմեկյան պատմական հրամանում ոչ միայն ամփոփեց Կարմիր Բանակի փայլուն հաղթանակները, այլև սովետական զինված ուժերի և սովետական ամբողջ ժողովրդի առաջ խնդիր դրեց մաքրել սովետական ամբողջ հողը ֆաշիստական աղտեղություններից: Հետապնդել ֆաշիստական վիրավոր գազանին և լիովին ոչնչացնել նրան իր իսկ սեփական որջում:

«Գերմանական զորքերն այժմ հիշեցնում են վիրավոր գազանին,— ասում է ընկեր Ստալինը,— որը հարկադրված է ետ սողալ դեպի իր որջի— Գերմանիայի սահմանները՝ վերքերը բուժելու համար: Բայց իր որջը քաշ-



ված վիրավոր գազանը չի դադարում վտանգավոր գազան լինելուց: Մեր երկիրը և մեզ հետ դաշնակից երկրները ստրկացվելու վտանգից ազատելու համար պետք է կրնկակոխ հետապնդեն գերմանական վիրավոր գազանին և նրան մինչև վերջը ոչնչացնեն նրա սեփական որջում»:

Հեռու չէ այն օրը, երբ սովետական ամբողջ ժողովուրդը, փառապանծ Կարմիր Բանակը սերտորեն համագործակցված մեր մեծ դաշնակիցների հետ, լրիվ կոչնչացնեն ֆաշիստական վիրավոր գազանին, պրոգրեսիվ մարդկության ամենաոխերիմ թշնամուն—գերմանա-ֆաշիստական զավթիչներին:

Զ. ԳՐԻԳՈՐՅԱՆ

---

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ՊԱՅՔԱՐԸ ՍՆՈՏԻԱՊԱՇՏՈՒԹՅԱՆ ԴԵՄ

Մարդկային հասարակության մեջ վաղուց ի վեր գոյություն ունի աշխարհի ծագման երկու տեսակ բացատրություն: Դրանցից մեկը պնդում է, թե աշխարհը, բնությունը ոչ ոքի կողմից չեն ստեղծվել, այլ գոյություն ունեն մշտապես և զարգանում են իրենց օրենքներով: Ուրեմն, նշանակում է, որ այն ամենը, ինչ մենք հանդիպում ենք բնության մեջ, մենք պետք է բացատրենք ելնելով բնության օրենքներից: Իսկ այդ օրենքների ճանաչողությունը տալիս է մեզ բնությունն ուսումնասիրող և մարդկանց պրակտիկ գործունեության վրա հիմնված գիտությունը: Գիտությունը մարդուն սովորեցնելով բնության օրենքների ճանաչողությամբ, նրան դարձնում է հզոր և ուժեղ: Երբեք վայրենին իրեն չէր կարող պատկերացնել, որ, ասենք, 20-րդ դարում նրա հեռավոր սերունդները կապրեն բազմահարկ քարե տներում, կօգտվեն էլեկտրականու-



թյունից, կխոսեն հեռախոսով, հաղորդակցության մեջ կմտնեն հեռագրի միջոցով, կլսեն ռադիո, գնացքներով կերթևեկեն և կթռչեն ինքնաթիռներով:

Այդ բոլորը հնարավոր է դարձել միայն այն բանի շնորհիվ, որ մարդը ճիշտ կերպով է հասկանում բնությունը:

Մյուս— հակագիտական— բացատրությունը հիմնվում է այն բանի վրա, որ աշխարհի հիմքում, իբր թե, դրված է մի հատուկ, բնությունից անկախ, հոգևոր սկզբունք: Ինչպես էլ որ այդ սկզբունքը տարբեր մարդկանց կողմից կոչվի—գաղափար, գիտակցություն, կամք, հոգի և այլն— նման հայացքի բոլոր կողմնակիցները մի բանում համաձայն են, որ հենց այդ սկզբունքն է ծնել բնությունը և այդ բնությունը կառավարում է:

Մարդկանց մոտ աշխարհի մասին ճիշտ պատկերացումներ երևան են եկել ո՛չ միանգամից, այլ մշակվել են աստիճանաբար, մարդկության բազմադարյան պրակտիկայի պրոցեսում, բնության դեմ մղած նրա պայքարի ընթացքում, հասարակական պայքարի ընթացքում:

Մեր հեռավոր նախնիները— վայրենինե-

րը— չափազանց սնոտիապաշտ էին: Նրանք կարծում էին, թե ամբողջ աշխարհը լի է ոգիներով, թե այդ ոգիները ստեղծել են երկիրը, կառավարում են բնության զանազան երևույթները, մարդկանց վրա հիվանդություններ են ուղարկում, նրանց մահ են պատճառում և այլն: Բնության հզոր ուժերով ճնշված վայրենիները այդ ոգիներին զոհ էին բերում, նրանց սիրաշահում էին նվերներով, նրանցից օգնություն էին աղերսում, զանազան կախարդական գործողություններ էին կատարում, զանազան առարկաներից փորձում էին գուշակել իրադարձությունների զարգացման ընթացքը:

Իհարկե այդ բոլորն անօգուտ բան էր, որովհետև նրանք հիմնվում էին ոչ թե բնության օրենքների ճանաչողության վրա, այլ բնության մասին կազմված երևակայական, ո՛չ ճիշտ, հակագիտական պատկերացման վրա:

Այդպիսի սնոտիապաշտական պատկերացումների մնացորդները մարդկային հասարակության մեջ ապրում են նաև այժմ, մանավանդ դասակարգային շահագործողական հասարակության մեջ, որտեղ նման պատկերացումները սնունդ են ստանում



ժողովրդական մասսաների տնտեսական ու քաղաքական ճնշումից, իրավազրկությունից, աղքատությունից ու խավարամտությունից:

Մեր սոցիալիստական երկրում նախապաշարումներն ու սնոտիապաշտությունները հիմնականում վերացված են: Սոցիալիստական կարգերը արմատախիլ են արել այն պատճառները, որոնցից սնվում էին սնոտիապաշտությունները ցարական Ռուսաստանում և, այդ սնոտիապաշտությունները դարձել են անցյալի վերապրուկ, բայց որպես վերապրուկ մի քանի սնոտիապաշտություններ դեռևս շարունակում են գոյություն ունենալ և վնաս են հասցնում ինչպես ընդհանուր, այնպես էլ անձնական շահերին: Մոսկվայի մարզի Զվենիգորոդի շրջանում վերջերս մի կոլտնտեսուհու դժբախտություն պատահեց, այն է՝ կովը դաշտից չվերադարձավ: Նա ամբողջ օրը փնտրեց կովը, բայց և այնպես չգտավ: Նա որոշեց գնալ վհուկի մոտ և փալ բանալ, թե կովը կենդանի՞ է արդյոք և ո՞րտեղ է գտնվում: Վհուկը ջրի վրա ինչ որ բան շշնջաց և հայտարարեց, որ կովը կենդանի է և որ նրան կարելի է վերադարձնել

450 ռուբլով: Եվ խոսք՝ հենց որ փողը հանձնվեց վհուկին, հետևյալ օրը երեկոյան հովիվը քշեց և բերեց, հայտարարելով, թե հավանաբար անտառում մոլորվել է:

Շրջակայքում լուր տարածվեց, թե վհուկը օգնել է կովը վերադարձնելու: Բայց շուտով պարզվեց բոլորովին այլ բան: Վհուկի օգնականը համաձայնեցրել է տեղական հովվին, որը խմիչքի սիրահար է եղել: Վհուկի խորհրդով նա կովը պահել է անտառում, որպեսզի այդ արարքով վհուկի հետ միասին փող վաստակի:

Սա ամեն տեսակ գուշակիչների ու վհուկների ժուլիկության ու շառլատանության բավական սովորական օրինակ է: Նրանք դյուրահավատ մարդկանց պարզապես կողոպտում են: Իրենց ժուլիկությունը թաքցնելու համար գուշակիչները սովորաբար շատ զգույշ են իրենց նախագուշակությունների ասպարեզում: Ճշգրիտ կերպով դրված հարցերի գուշակիչները սովորաբար չեն պատասխանում: Օրինակ՝ այն հարցին, թե «Հայրս քանի՞ տարեկան է», «Կենդանի՞ է արդյոք մայրս», դուք պատասխան չեք ստանա, կամ կստանաք խուսափողական պատասխան: Այն հարցին, թե «Քանի՞ երեխա ունեմ», մի գուշակող



պատասխանել է՝ «Ավելորդ երեխաներ չունես, իսկ ավելին քեզ հարկավոր չէ»:

Կամ ահա գուշակության մի այլ օրինակ. «Դուք ծնվել եք ոչ հարուստ, բայց բարեկեցիկ ընտանիքում: Ձեր կյանքում գերակշռել են մեղմ տարրերը, որից և ծագել են ձեր անհաջողությունները: Ձեր բնավորության թերությունները խանգարում են կյանքում հաջողություններ ձեռք բերելուն: Մոտիկ ժամանակներս ձեր վիճակում փոփոխություն է տեղի ունեցել: Մոտիկ ապագայում ձեր դրությունը դեռ շատ անգամ կփոխվի: Վախեցեք կապույտ աչքերով խարտյաշ կանանցից: Ձեր ապրած տանը դուք ունեք թաքնված թշնամի»:

Եթե ունկնդիրը խորամուխ չի լինում այն բանի մեջ, որ նման «նախագուշակությունը» ամեն տեսակ իմաստից ու բովանդակությունից զուրկ է, ապա նրան կարող է թվալ, որ «գուշակիչը» կարծես թե ամեն, ինչ նախագուշակել է: Եվ իսկապես՝ ընտանիքը կարծես թե իրոք առանձնապես հարուստ չէ, որովհետև ավելի ևս ունևոր է եղել. անհաջողություններ էլ են եղել, բնավորությունն էլ կարող էր մի քիչ ծանր լինել, կյանքում փոփոխություններ նույնպես տեղի են ունեցել: Մի խոսքով, կար-

ծես թե ամեն ինչ ճիշտ է։ Այդպիսի նախագուշակության դեպքում շառլատանը կարող է հանգիստ լինել։ Բայց ժողովրդական առածը վաղուց արդեն այդպիսի գուշակությունների մասին ասել է՝ «Տատիկը երկուսն էլ ասել է՝ կամ անձրև կլինի, կամ ձյուն, կամ կլինի, կամ չի լինի»։ Այդպիսի գուշակությունները ձևված են հենց այդ առածի ասած ձևով։

Շատ մարդիկ սնահավատ հայացք ունեն ճակատագրի նկատմամբ։ «Ճակատագրից չես խուսափի»,— ասում են այդ մարդիկ։ Իրենց կամ իրենց մոտիկների ճակատագիրը իմանալու համար շատերը դարձյալ դիմում են գուշակությունների։ Ռուսական խոշոր քաղաքներից մեկի շուկայում վերջերս գուշակություններ էր անում Ռադյուկով ազգանունով մի կույր մարդ։ Նա ուներ դնդասեղով ամրացված մի ձեռք խաղաթուղթ և կույրերի համար գրված մի գիրք։ Նա ձախ ձեռքով բռնում էր հաճախորդի ձախ ձեռքը, աջ ձեռքը մատն էր ածում գրքի վրա, կամ շոշափում էր խաղաթղթերը և ասում էր՝ «Ձեր որդին (ամուսինը, եղբայրը և այլն) թեթև վիրավորված է. նա պառկած է գոսպիտալում. մի հուզվեք, շուտով կգա»։ Այն գիրքը,



որով գուշակություններ էր անում Ռադյուկովը, աշխարհագրության դասագիրք էր։ Սովետական աշխատողները մի անգամ Ռադյուկովին հարց տվին՝ «Չէ՞ որ դուք ակնհայտ կերպով խաբում եք»։ «Այո,— պատասխանեց Ռադյուկովը,— բայց ես բոլորին լավ բաներ եմ ասում և ո՛չ վատ։ Լավ բանի համար ավելի շատ փող են տալիս»։

Հին ժամանակներում գուշակներին ու վհուկներին շատ հաճախ դիմում էին երիտասարդ աղջիկներ «իրենց ճակատագիրն իմանալու» համար։ Հին, ցարական կարգերի ժամանակ կնոջ ճակատագիրը շատ ծանր էր։ Բնական է, որ խեղճ և իրավազուրկ կինը դիմում էր գրբացներին, կախարդներին, վհուկներին, փորձելով ինչ վարձատրությամբ ուզում է լինի՝ բարելավել իր «ճակատագիրը», իր համար «երջանկություն» գնել, «հմայել սիրածին», «մրցակցուհու» առաջն առնել և այլն։

Բայց Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան կնոջ դրությունն արմատապես փոխեց և նրան ընդմիշտ ազատեց ճնշումից, իրավազրկությունից ու աղքատությունից։ Կինը դարձավ ՍՍՌՄ լիիրավ քաղաքացի։ Այդ պատճառով, եթե ճակա-

տագրի մասին խոսելու լինենք, ապա այդ ճակատագիրը ամենից առաջ գտնվում է հենց իրեն՝ կնոջ ձեռքում: Նրանից, նրա աշխատանքից, նրա համառությունից, ցանկությունից ու ջանքերից է կախված ամենից առաջ այս կամ այն դիրքը գրավել հասարակության մեջ, հրաժարվել անցանկալի փեսացուից, կամ գտնել այնպիսի փեսացու, որ իրեն հաճելի է, ստեղծել այնպիսի ընտանիք, որը հիմնված է բարեկամության, սիրո և փոխադարձ նվիրվածության վրա: ՍՍՌՄ-ում երիտասարդ աղջկան ոչ ոք իրավունք չունի ամուսնացնել չսիրած ծերունու կամ չսիրած մարդու հետ. Այսպես կոչված սիրային բոլոր գուշակությունները, դյութումները, կախարդանքները սովետական հասարակության պայմաններում ամեն մի իմաստից ու նշանակությունից զուրկ են:

Շատ անգամ դիմում են կախարդների ու գրբացների օգնության՝ հիվանդությունների դեպքում: Մի կախարդ, օրինակ, չիբանն այսպես էր բժշկում: Նա շշնջում էր ցավացած տեղի վրա հետևյալ աղոթքը՝ «Քարից՝ ոչ պտուղ, քարից՝ ոչ ածուխ, ոչ արատ, ոչ կանաչ: Այդպես էլ աստծու ծառային չիբանից ոչ ճմլկոտում թող լինի,



ոչ ծակոց, ոչ ցավ, հավիտյանս հավիտենից, ամեն»: Այս անմիտ մրթմրթոցից հետո կախարդը երեք անգամ թքում էր չիբանի վրա և մատը երեք անգամ ման էր ածում նրա շուրջը: Կարելի՞ է արդյոք մտածել, թե չիբանը դրանից հետո կլավանա:

Չէ՞ որ չիբանը մակերեսային ուռուցք է: Նա առաջ է գալիս քերծվածքի, վերքի վարակումից՝ հատուկ միկրոբներով: Այդ միկրոբները թափանցելով մարդու մարմնի մեջ, սկսում են այնտեղ բազմանալ և առաջ են բերում թարախակալում: Ուրեմն, նշանակում է, թե չիբանը բուժվելու համար պետք է ոչնչացնել հիվանդության պատճառը՝ վնասակար միկրոբները: Այդ անում են բժիշկները: Նրանք ճեղքում են չիբանը, հեռացնում թարախը և ապա վերքը լվանում միկրոբներին սպանող հեղուկով: Չիբանը կարող է անցնել նաև առանց բժշկության, որովհետև չիբան եղած տեղին մոտենում է արյունը: Արյան մեջ գտնվում են արյան սպիտակ գնդիկներ, որոնք սկսում են լափել միկրոբներին և ուռուցքը անհայտանում է:

Բայց այստեղ գործ չունի գուշակիչը իր աղոթքներով: Պարզ է, որ նրա անմիտ

փռշխոցը բոլորովին չի կարող ոչնչացնել բացիլը: Կախարդը թքում է չիբանի վրա, բայց թուքը ոչ միայն չի ոչնչացնում վարակը, այլ ընդհակառակը՝ ավելի ևս նըպաստում է նրա տարածմանը, որովհետև թքի մեջ սովորաբար լինում են վարակ պարունակող զանազան տեսակի միկրոբներ:

Սնոտիապաշտ մարդիկ հավատում են նշաններին: Եթե բուն բվում է, կամ շունը ոռնում, նրանք ասում են, թե մահվան նըշան է. եթե ձախ ափը քոր է գալիս, ասում են, թե փող ստանալու նշան է, ձախ ոտքին վեր կենալը բարի նշան չէ, աղ թափելը կռվի նշան է, թեյ թափելը անսպասելի բանի նշան է, եթե ճամփից կատու է անցել՝ անհաջողության նշան է, և այլն և այլն:

Բավական է ուշադրությամբ մտածել և ամեն մեկի համար պարզ կդառնա, որ նըման երևույթների մեջ իրար ոչ մի կապ գոյություն չունի: Այդ երևույթները պարզապես պատահական զուգադիպություններ են և ո՛չ ավելի: Եվ իրոք: Անտառում կկուն կու-կու է կանչում: «Կկո՛ւ, կկո՛ւ, քանի՞ տարի է մնացել ինձ ապրելու»— հարցնում է այդ թռչունին սնոտիապաշտ մարդը: Քանի անգամ որ նա կու-կու կկանչի, իբր



թե այդքան տարի էլ մնում է ապրել հարցնողին: Բայց փորձը հարյուրավոր անգամներ հերքում է այդպիսի «գուշակությունները»: Իզուր չէ, որ ժողովրդական առածն ասում է՝ «Կկուն երկար տարիներ էր գուշակել տատիկին, բայց խաբել էր»:

Մի քանի դպրոցականներ կարծում են, որ քննության ժամանակ լավ թվանշանը կախված է այն բանից, թե ի՞նչ հագուստով կպատասխանես—«բախտավոր», թե՞ «անբախտ»: «Բախտավոր» հագուստը այն հագուստն է, որը հագին եղած ժամանակ դպրոցականը երբևիցե լավ թվանշան է ստացել: Այսպիսով պատահական զուգադիպությունը այստեղ ընդունվում է որպես պատճառ: Իրականում թվանշանը կախված է ո՛չ թե հագուստից, այլ գիտելիքից, աշխատասիրությունից, պատրաստականությունից:

Շատ նշաններ կապված են գյուղատնտեսության հետ, եղանակի հետ, բերքի հետ: Դեռ մինչև այսօր էլ մի շարք տեղերում գյուղացիները ընդունում են, որ գյուղատնտեսության հաջողությունը կախված է երկնքում ապրող հատուկ էակների կամքից: Սերգեյ Միրոնովիչ Կիրովը Լենինգրադի մարզի ու Կարելիայի հարվածային

կոլխոզնիկների 1933 թ. առաջին համագումարում ասել է՝

«Պետք է մի անգամ ընդմիշտ վերջ տալ անցյալի պապենական սովորություններին, երբ գյուղատնտեսական աշխատանքների ժամկետները հարմարեցվում էին երկնքին, երկնաբնակներին և ոչ թե երկրի վրա բնակվողներին: Եթե հարկավոր էր հունձն սկսել, ապա ասում էին, թե խոտհունձը պետք է սկսել մոտավորապես Պետրոսի պահքից, ոչ շուտ և ոչ ուշ. հացահատիկը պետք է հնձել Եղիայի օրվանից ոչ շուտ և ոչ ուշ: Գյուղացի տնտեսատերերը ասում են, թե գյուղատնտեսության մեջ աշխատանքը ավելի դժվար է, քան ֆաբրիկայում կամ գործարանում, որովհետև ֆաբրիկայում միևնույն է, թե ե՞րբ կաշխատես—ձմեռը, ամառը, գարնանը, թե աշնանը,— եկար գործարան և սկսիր աշխատել: Բայց ահա գյուղատնտեսության մեջ աշխատանքն ավելի դժվար է և ավելի խորամանկ գործ է: Այնտեղ հարկավոր է ուշադրության առնել բնությունը, մեկ՝ անձրև է, մեկ՝ քամի, մեկ՝ երաշտ: Դա ճիշտ է:

Իսկ եթե ճիշտ է, ապա ի՞նչպես կարելի է գտնել, որ հունձը պետք է կատարել անպայման Պետրոսի պահքից սկսած, իսկ



հացահատիկը հնձել Եղիայի օրվանից սկսած:

Պարզ է, որ գյուղատնտեսության մեջ աշխատանքները պետք է հարմարեցնել եղանակի պայմաններին, տեղին և կլիմայական հանգամանքներին և այլն, իսկ այդ բոլորը նշանակում է, որ վնասակար է կողմնորոշվել դեպի նշանները, այլ պետք է ելնել իրադրության կոնկրետ ճանաչողությունից, փորձից, պրակտիկայից, գիտությունից:

Սովետական մեծ բանաստեղծ Վ. Մայակովսկին մի հիանալի բանաստեղծություն ունի գյուղացի Ֆերապոնտի մասին: Այդ բանաստեղծության վերնագիրն է՝ «Նշաններից օգուտ չկա, բացի վնասից»: Ֆերապոնտի փոքրիկ որդու կոկորդում կոշտ բան էր դեմ առել: Հայրը վազում էր բուժակի հետևից, բայց գործը ուրիշ կերպ է դասավորվում: Նա նախ տերտերի է հանդիպում, հետո ճանապարհին սև կատու է տեսնում: Սնոտիապաշտ Ֆերապոնտը ամեն անգամ ճանապարհը փոխում է, իսկ մինչև շրջանց ճանապարհներով տեղ հասնելը նրա որդին մեռնում է: «Իմ առակի,—գրում է Մայակովսկին,— միտքն այն է, որ դժբախտությունների ժամանակ կօգնեն ոչ թե

անտախապաշտությունները, այլ արդյունքը»: Այդպիսի ցերապոնտների կարելի է հանդիպել նաև այժմ:

Ճիշտ է, կարող են առարկել, թե լինում են նաև ճիշտ նշաններ, որոնք իրականանում են: Օրինակ՝ ասում են՝ եթե ոսկորները ցավում են՝ եղանակը փոխվելու է. եթե քամին երեկոյան ուժեղանում է՝ անձրև կգա. եթե աղը թացացել է՝ եղանակը կվատանա. եթե արևը մայր մտնելիս երկինքն ամպամած է՝ անձրև կգա. եթե ծիծեռնակները ցածր են թռչում՝ անձրև կգա. եթե մոծակներ են վխտում՝ եղանակը կտաքանա և այլն:

Իրոք որ, այդպիսի նշանները ճիշտ են: Բայց ինչո՞ւ. որովհետև նրանք կազմվել են բնության երևույթների անթիվ եղած մարդու երկար դիտողությունների հիման վրա և հանդիսանում են բնության մասին, նրա օրինաչափությունների, պատճառական կապերի, բնության երևույթների հաջորդականության վերաբերյալ մարդու ունեցած պարզ գիտելիքների արտահայտություն: Այդպիսի նշանները գիտությանը չեն հակասում, այլ նրա հետ միասին նույն գործն են կատարում: Այդպիսի յուրաքանչյուր նշան կարելի է բացատրել: Օրինակ՝ ինչո՞ւ



վատ եղանակ լինելուց առաջ ռևմատիկների ոսկորները ցավում են: Որովհետև ռևմատիկ ցավերը խոնավությունից ուժեղանում են: Եթե սկսվում է փոթորիկ կամ վատ եղանակ, ապա օդում դրանից շատ առաջ տեղի են ունենում փոփոխություններ՝ մթնոլորտային ճնշումը իջնում է, խոնավությունն ավելանում և այլն: Ռևմատիկի հիվանդ հոդերը կարծես թե մի տեսակ զգայուն օդերևութաբանական գործիքներ լինեն, որոնք պատասխանում են մթնոլորտում տեղի ունեցած փոփոխություններին: Ահա թե ինչու նման նշանները ճիշտ են: Մի հատուկ գիտություն կա՝ օդերևութաբանություն,— որը ցույց է տալիս, թե ինչպես պետք է նախօրոք իմանալ եղանակի մեջ տեղի ունեցող փոփոխությունները: Դա կարևոր է ոչ միայն գյուղատնտեսության համար, այլև ուրիշ նյուատակների համար, օրինակ, ավիացիայում, նավարկության մեջ և այլն:

Արդյոք հավատո՞ւմ են իրենք՝ գրբացները, կախարդները և վհուկները իրենց նախագուշակություններին: Իհա՛րկե ոչ: Եթե ուրիշները չգիտեն, ապա նրանք իրենք լավ հասկանում են, թե ինչպես են հիմարացնում խավարամիտ և դյուրահավատ մարդ-

կանց: Զանազան տեսակ շարլատանների հաշիվը շատ պարզ է՝ խաբվողների հաշվին իրենց համար ճոխ կյանք ստեղծել: Սովորաբար բոլոր շարլատաններն իրենց խորհուրդների ու գուշակությունների համար մեծ փողեր են վերցնում, մթերքներ, հագուստ, անասուններ են կորզում: Օրինակ, դրբաց Գերասիմովը Լենինգրադի մարզում կարճ ժամանակում կախարդական «բժշկությամբ» վաստակել է չորս տուն:

Զարմանալի չէ, որ սովետական իշխանությունը նման արարքները պատժում է որպես քրեական հանցագործություն: ՌՍՖՍՀ քրեական օրենսգրքի 123-րդ հոդվածն ասում է՝ «Բնակչության մասսաների մեջ սնահավատություն գրգռելու և այդ միջոցով որևէ շահ կորզելու միտումով կատարվող խաբեբայական գործողությունները պատժվում են ուղղիչ աշխատանքներով մինչև մեկ տարի ժամանակով և գույքի մի մասի բռնագրավում կամ մինչև 500 ռուբլի տուգանք»:

Բայց նման շարլատանության դեմ, իհարկե, պայքարել պետք է գլխավորապես գիտելիքների պրոպագանդայի միջոցով: Շարլատանների ոտքի տակի հողը խախտելու համար անհրաժեշտ է հաղթահարել



մարդկանց գիտակցության մեջ եղած սնոտիապաշտությունը: Բայց ի՞նչպես անել այդ: Գիտելիքներ տարածելու միջոցով մասսաների մոտ ճիշտ աշխարհայեցողություն մշակելու միջոցով:

Գիտական ճիշտ աշխարհայեցողություն մշակելու համար մեծ նշանակություն ունի բնագիտության պրոպագանդան: Եթե մարդիկ գիտեն, թե ի՛նչ է մթնոլորտը, ի՛նչ է եղանակը, ի՛նչ է ամպրոպն ու կայծակը, ինչի՛ց է առաջ գալիս անձրևը, կարկուտը և այլն, նրանք սնահավատ լինել չեն կարող: Եթե մարդիկ գիտեն, թե ի՛նչպես է կառուցված մարդկային մարմինը, ի՛նչ է հարկավոր մարդու առողջությունը պահպանելու համար, ծանոթ են ամենապարզ սանիտարական— առողջապահական միջոցառումներին, նրանք նույնպես չեն կարող սնահավատ լինել:

Այդ պատճառով անհրաժեշտ է ամեն կերպ հանձնարարել պարտիական ու քաղլուսավորական կազմակերպություններին՝ տանել բնական գիտությունների պրոպագանդա, անցկացնել զրույցներ և դասախոսություններ, օրինակ, հետևյալ թեմաների շուրջը՝ «Ի՞նչ է եղանակը», «Ի՞նչպես է մարդը փոխում բնությունը», «Ինչի՞ց են

առաջանում անձրևը և ամպրոպը», «Ինչո՞ւ են մարդիկ հիվանդանում և կարելի՞ է արդյոք հաղթահարել միկրոբներին», «Ինչպե՞ս է կառուցված տիեզերքը», «Արդյոք աշխարհը սկիզբ ունեցե՞լ է և վերջ կունենա՞», «Ինչպե՞ս է երկրի վրա առաջացել կյանքը», «Որտեղի՞ց է առաջացել մարդկային ցեղը», «Ի՞նչ է հոգին», «Ինչի՞ց են առաջանում երազները», «Կարելի՞ է արդյոք գուշակել ապագան» և այլն: Այս թեմաների վերաբերյալ զրույցներն ու դասախոսությունները, ընդհանուր քաղաքական ու կուլտուր-լուսավորական աշխատանքի հետ միասին, միակ հուսալի միջոցն են հանդիսանում սնոտիապաշտությունները հաղթահարելու համար:

Գիտելիքների պրոպագանդայի ասպարեզում հատուկ ուշադրություն պետք է դարձնել գյուղի վրա: Լավ կլիներ գործն այնպես կազմակերպել, որ յուրաքանչյուր կոլխոզում գիտական թեմաների վերաբերյալ դասախոսություններ կարդացվեին կանոնավոր, ամիսը առնվազն մեկ անգամ:

Յուրաքանչյուր շրջանում դրա համար ուժեր կգտնվեն: Այդ ուժերը տեղական ինտելիգենցիայի կադրերն են՝ բժիշկները,



ուսուցիչները, գյուղատնտեսները, պարտիական ու սովետական հիմնարկությունների աշխատողները: Այդ մարդկանց պետք է հավաքել, նրանց մատակարարել գրականություն, զինել ակնառու պիտույքներով և ղեկավարել նրանց աշխատանքի պրոցեսում:

Ֆ. ՕԼԵՇՉՈՒԿ

(«Спутник Агитатора» № 7—8, апрель 1944 г.)

---

## ԱԳԻՏԱՏՈՐԻ ԽՈՍՔԻ ՈՒԺԸ

Բոլշևիկ ագիտատորի խոսքն ամենուրեք հնչում է որպես մի կոչ, որը մարտական և աշխատանքային սխրագործություններ է մղում սովետական մարդկանց։

Լենինական քաղաքի հիմնարկ-ձեռնարկությունների 110 ագիտկոլեկտիվներում ընդգրկված են ավելի քան 675 ագիտատոր՝ պարտիական և անպարտիական ընկերներ, որոնք բոլշևիկյան ճշմարտացի խոսքը տանելով մասսաների մեջ, նրանց մոբիլիզացնում են ռազմաճակատին ավելի մեծ օգնություն ցույց տալու համար։ Նրանք մասսայականացնում են Սովետական Ինֆորմբյուրոյի ամենօրյա հաղորդագրությունները, աշխատավորությանը տեղյակ են պահում միջազգային իրադարձություններին, մասսայական-բացատրական աշխատանքը հմտորեն զուգակցում են արտադրական հարցերի հետ։

Ահա այդպիսի աշխատանքի մի քանի օրինակներ։— Մեխանիկական գործարանի



ագիտկոլեկտիվը բաղկացած է 10 հոգուց։ Ագիտացիոն աշխատանքի են ներգրավված ցեխերի պետերը, գործարանի տեխնիկական ղեկավարները, վարպետները և այլն։ Այստեղ ագիտատորները օրինակ են հանդիսանում արտադրության մեջ կատարած իրենց լավագույն աշխատանքով։ Գործիքային ցեխի վարպետ, ագիտատոր Վ. Մաչարյանն արել է ռացիոնալիզատորական բազմաթիվ առաջարկություններ, որոնց շնորհիվ գործարանը տարեկան տասնյակ հազարավոր ռուբլիների օգուտ է ստանում։ Ագիտատոր-վարպետները հոգում են նորեկ բանվորների դաստիարակության, նրանց որակավորման մասին։ Երիտասարդ խառատ Գևորգ Ծախղամյանը գործարան եկավ 1942 թվին։ Սկզբնական շրջանում նա ցեխում հայտնի էր իր անկարգապահությամբ, աշխատանքի ժամերին թրև էր գալիս, չէր կատարում ցեխի պետի կարգադրությունները։

Ցեխի ագիտատոր ընկ. Գեղամ Ադաջանյանն իր հսկողության տակ առավ նորեկ բանվորին։ Ագիտացիոն պարապմունքների ընթացքում հաճախ էր տրվում Գևորգ Ծախղամյանի անունը. առաջավոր մարդիկ քննադատում էին նրան, միաժամանակ

խրատում, ցուցումներ տալիս: Այդ օգնեց գործին: Եվ, բանվորները աստիճանաբար նրա մեջ զգալի փոփոխություններ նկատեցին: Նա վերացրեց աշխատանքից ուշանալը, աշխատանքային ժամերը լրիվ չօգտագործելը և անկարգապահության դեպքերը, սիրով կպավ գործին, բարձրացրեց իր արտադրական որակը:

Եվ հիմա գործարանի առաջավոր բանվորների թվում մենք կարդում ենք նաև Գևորգ Ծախզամյանի անունը, որը սիստեմատիկաբար իր պլանները կատարում է 200-ից 250 տոկոսով:

Մեկ ուրիշ օրինակ. Մեխանիկական գործարանը գյուղատնտեսական մեքենաների մասերի պատրաստման պատասխանատու առաջադրանք ստացավ: Ագիտատորները գործի անցան: Անցնելով ցեխից-ցեխ, նրանք բանվորներին բացատրում էին գյուղատնտեսական մեքենաների և գործիքների անհրաժեշտ մասերը տեղում պատրաստելու նշանակությունը, հատկապես այժմ՝ պատերազմի ժամանակ: Յուրաքանչյուր բանվոր խորապես զգաց գործի պատասխանատվությունն ու կարևորությունը: Դա իր դրական արդյունքն ունեցավ: Փետրվարի



20-ին գործարանը կատարեց մեքենաների մասերի պատրաստման առաջին եռամսյակի պլանը: Բացի դրանից, Դուզքենդի ՄՏԿ-ի համար գործարանը մինչև հիմա պատրաստել է 3·000 ռուբլու արժողությամբ գյուղատնտեսական մեքենաների և գործիքների զանազան մասեր:

Ագիտատորներն իրավամբ կարող են պարծենալ իրենց աշխատանքի այսպիսի արդյունքներով:

***

Կարմիր Բանակի զորքերի կողմից մեր պետական սահմանին հասնելու լուրը բերկրանքով դիմավորեց սովետական ողջ ժողովուրդը: Ինչպես ամենուրեք, այնպես էլ Լենինականում այդ առթիվ տեղի ունեցան բազմամարդ միտինգներ, ուր բանվորներն ու բանվորուհիները ի պատասխան Կարմիր Բանակի հաղթանակների՝ պատրաստակամություն հայտնեցին բոլոր ուժերը գործի դնել թշնամու արագ և վերջնական ջախջախման համար:

Պատերազմի մեջ տեղի ունեցած այդ խոշորագույն և նշանակալից իրադարձության արձագանքեցին նաև ագիտատորները:

Մարտի 28-ին Տեքստիլ կոմբինատի

գործվածքային գործարանի 2-րդ կորպուսի 1-ին կոմպլեկտի ագիտատոր, ենթավարպետ, Լենինի շքանշանակիր ընկ. Համբարձում Ֆարմանյանը զրույց անցկացրեց «Աշխատանքի արտադրողականության բարձրացումով է՛լ ավելի ուժեղացնենք օգնությունը Կարմիր Բանակին» թեմայի շուրջը:

Ագիտատորն իր զրույցը սկսեց համառոտ ներածականով:

— Մեր սրտերը ուրախությամբ լցվեցին,— ասաց նա,— երբ լսեցինք, որ Ուկրաինական 2-րդ ռազմաճակատի զորքերը հասել են մեր պետական սահմանին, Մակայն, ընկերնե՛ր, պատերազմը դեռ չի վերջացել, Ֆաշիստական գազանը դեռ մեր հողումն է: Մեզ դեռևս սպասում են նոր կատաղի մարտեր: Թշնամու արագ և վերջնական ջախջախման համար մենք պետք է օր-օրին ուժեղացնենք օգնությունը մեր հերոսական Կարմիր Բանակին:

Այնուհետև ագիտատորը մի շարք ցայտուն օրինակներ բերեց, որոնք ունկնդիրներին ցույց տվին աշխատանքի արտադրողականության բարձրացման նշանակությունը:



Դիմելով գործարանի բանվորուհիներից մեկին, ագիտատորն ասաց.

— Այ, օրինակ, ընկե՛ր Մարիամ, քո ամուսինը՝ Աշոտը գտնվում է ռազմաճակատում: Պատկերացրու, որ նա առանց ակռակեղենի է: Դու թույլ կտա՞ս, որ թշնամու դեմ կռվող քո հարազատը մնա առանց հագուստի:

Եթե մեզանից ամեն մեկը իր օրվա պլանը գերակատարի 5 տոկոսով, ապա մեր կոմպլեկտը կտա ամսական պլանից 12.151 մետր ավելի բյադ, որը բավական է 2230 մարտիկի ակռակեղենի համար:

Ագիտատորի զրույցը տվեց այն արդյունքը, որ բանվորուհիները որոշեցին կոմպլեկտի այս տարվա պլանը կատարել 9 ամսում: Զրույցից մի քանի ժամ հետո կոմպլեկտում երևաց այսպիսի մի լոզունգ.

«Ընկե՛ր, թերակատարելով արտադրանքի նորման թեկուզ 1 տոկոսով, դու ամսական 227 մարտիկի կթողնես առանց ակռակեղենի:

Մեր լոզունգն է՝ չպետք է լինի պլանը թերակատարող և ոչ մի բանվոր»:

Հետևյալ օրը՝ մարտի 29-ին կոմպլեկտի բանվորները պլանից դուրս արտադրեցին այնքան բյադ, որը բավական է 213 մար-

տիկի սպիտակեղենի համար, և նամակ գրեցին գործող բանակի N զորամասի մարտիկներին, որոնց շարքերում կռվում է կոմպլեկտի բանվորուհի Մարիա Զուլհակյանի ամուսինը՝ Աշոտ Զուլհակյանը:

***

Ագիտատորները մեր աշխատավորությանը կոչ են անում խոր ատելության և վրեժխնդրության ընդդեմ գերմանական զավթիչների, որոնք այնքան վիշտ ու տառապանք պատճառեցին մեր ժողովրդին:

Լենինականի Կարի գործարանի դիրեկտոր ընկ. Հակոբ Ավագյանը զրույց անցկացրեց «Թշնամուն ատել հոգու ամբողջ ուժով» թեմայով:

Նա իր զրույցն սկսեց կարդալով Կուրգանովի «Մայրը» պատմվածքը «Սպանի՛ր գազանին» բրոշյուրից:

Տեսնեիք, թե ինչպե՛ս բանվորները լարված ուշադրությամբ լսում էին ռուս կնոջ՝ պարտիզանուհի Ալեքսանդրա Դրեյմանի հերոսական պատմությունը: Զրույցն անսահման ատելությամբ լցրեց բանվոր մարդկանց սրտերը: Աչքերն արցունքով լցված, ատամներն իրար սեղմած ելույթ ունեցավ գործարանի 5-րդ ագրեգատի



հրահանգչուհի ընկ. Եղսիկ Աթոյանը:

— Հարազա՛տ քույր Ալեքսանդրա Մարտինովնա,— հուզված ասաց նա,— մենք երբեք չենք մոռանա քեզ, քո հիշատակը միշտ վառ կպահենք մեր սրտերում: Մենք վրեժ կլուծենք անարգ թշնամուց:

Նա խնդրում է իրենց ագրեգատը կոչել Ալեքսանդրա Մարտինովնայի անունով և պարտավորվում է լրացուցիչ արտադրանք տալ ռազմաճակատին:

Այդ օրվանից սովետական այդ ազնիվ կնոջ անունն անցնում է բերնե-բերան: Գործարանի ցեխերում երևացին այսպիսի լոզունգներ՝ «Սովետական հայրենիքի համար պայքարենք այնպես, ինչպես պայքարեց և զոհվեց պարտիզանուհի Ալեքսանդրա Մարտինովնա Դրեյմանը»: Իսկ 5-րդ ագրեգատի դռան վրա գրվեց. «Պարտիզանուհի Ալեքսանդրա Մարտինովնայի անվան ագրեգատ»:

Զրույցից 10 օր հետո Ալեքսանդրա Մարտինովնայի անվան ագրեգատի բանվորները պլանից դուրս տվեցին 400 ձեռք արտադրանք:

---

## ԳՅՈՒՂԱԿԱՆ ԱԳԻՏԱՏՈՐ, ԱՆՑԿԱՑՐՈՒ ԶՐՈՒՅՑՆԵՐ ՆԵՐՔԵՎՈՒՄ ՆՇՎԱԾ ԹԵՄԱՆԵՐԻ ՇՈՒՐՋԸ

*Գարնան գյուղատնտեսական աշխատանքների ընթացքում ագիտատորների կողմից անցկացվելիք զրույցների թեմատիկա.*

1. *Կարմիր Բանակի հաջողությունները ռազմաճակատում և կոլխոզնիկների խընդիրները բերքատվության բարձրացման գործում:*

2. *Ինչո՞վ է մեր կոլխոզն օգնել Կարմիր Բանակին և, մեր բրիգադայի խնդիրները ցանքսի մշակման գործում:*

3. *Մեր կոլխոզի առաջավոր բրիգադաները:*

4. *Աշխատանքի կազմակերպումը և կադրերի օգտագործումը մեր բրիգադայում:*

5. *Տանք ֆրոնտին ավելի շատ ծխախոտ:*

6. *Բամբակը— դա հանդերձանք է մարտիկի համար, վառոդ ու պայթուցիկ նյութ:*

7. *Անասունների մթերատվության բարձրացումը հիմնական խնդիր է անասնապահի համար:*



8. *Տանք Կարմիր Բանակին ավելի շատ կարտոֆիլ և բանջարեղեն:*

9. *Կինը վճռող ուժ է կոլխոզում:*

10. *Սոցիալիստական մրցության առաջավորները մեր կոլխոզում:*

11. *Կոլխոզի ներքին միջոցների մոբիլիզացման և լրիվ օգտագործման նշանակությունը:*

12. *Ինչպե՞ս պետք է երիտասարդ կոլխոզնիկը բարձրացնի իր ագրոտեխնիկական գիտելիքները:*

13. *Սովետական երիտասարդությունը հերոս է ռազմաճակատում, հերոս է և թիկունքում:*

14. *Ինչպե՞ս է մեր կոլխոզն օգնում զին-ծառայողների ընտանիքներին:*

### ՊՈՊՈՒԼՅԱՐ ԳԻՏԱԿԱՆ ԶՐՈՒՅՑՆԵՐ

1. *Ինչի՞ց է կախված եղանակի փոփոխությունը:*

2. *Ինչպե՞ս է մարդը վերափոխում բնությունը:*

3. *Ինչի՞ց են առաջանում անձրևը և ամպրոպը:*

4. *Ինչի՞ց են հիվանդանում մարդիկ և կարելի՞ է արդյոք հավատալ գըրբացներին:*

5. Ինչպե՞ս է առաջացել կյանքը երկրագնդի վրա:

6. Ի՞նչ բան է երազը:

Առաջադրած առաջին բաժնի զրույցների բոլոր թեմաները պատրաստելիս ագիտատորը տեղական նյութերից ու փաստերից բացի, իր ձեռքի տակ պետք է ունենա և հիմնվի հետևյալ աղբյուրների վրա.—

1. Ստալին. Հրաման Գերագույն Գլխավոր Հրամանատարի. 1-ին մայիսի, 1944 թ. № 70:

2. «Սովետական Հայաստան»— առաջնորդող. «Բոլշևիկորեն կատարենք Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմի պլենումի որոշումները: 1944 թ. 4-ին մարտի, № 45:

3. «Սովետական Հայաստան»— 16-ին մարտի, 1944 թ. № 53. «ՍՍՌՄ Ժողկոմսովետում և ՀամԿ(բ)Պ Կենտկոմում». գյուղատնտեսական աշխատանքների պլանի և բերքատվության բարձրացման մասին:

4. «Ագիտատորի բլոկնոտ»— № 1, 1944 թ., էջ 28: «ՍՍՌՄ Գերագույն Սովետի 10-րդ սեսիայի որոշումների և պարտիական կազմակերպությունների 1944 թ. խնդիրների մասին»: Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմի քարտուղար ընկ. Հարությունյանի զեկուցումից:



5. «Սովետական Հայաստան»— 9 մարտի, № 93: «Պրավդայի» առաջնորդողը. «Որքան ավելի բարձր է բերքը, այնքան ավելի մոտ է հաղթանակը»:

Այս թեմատիկայով զրույցներ պատրաստելու գործում ագիտատորներին մեծ օգնություն պետք է ցույց տան ագիտկոլեկտիվի ղեկավարները և պարտկաբինետները: Պոպուլյար գիտական զրույցները պետք է հանձնարարել շրջանի ինտելիգենցիային և համապատասխան կարող ընկերներին:

---

Պատասխանատու խմբագիր՝
Զ. ԳՐԻԳՈՐՅԱՆ

